Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 6 ՓԵՏՐՎԱՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հայկական ՍՍՌ-ում կա ընդամենը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների 1.256 ընտրական տեղամաս և 269 ընտրական օկրուգ։*

*Հայկական ՍՍՌ բոլոր օկրուգներում ձայների վերջնական հաշվման համաձայն ձայնի իրավունք ունեցող 713.240 մարդու ընդհանուր թվից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին մասնակցել են 713.164 մարդ, որը կազմում է ցուցակագրված ընտրողների ընդհանուր թվի 99,99 տոկոսը։*

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտ-*

ությունների ընտրական բոլոր օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին քվեարկել է 711.747 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,81 տոկոսը։

Երևան քաղաքում 147.715 մարդուց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին մասնակցել է 147.682 մարդ, կամ ցուցակագրված ընտրողների ընդհանուր թվի 99,98 տոկոսը։

Օկրուգային ընտրական հանձնաժողովների տվյալներով ցուցակագրվել է բոլոր 269 դեպուտատների ընտրությունը։ Բոլոր ընտրված դեպուտատները առանց բացառության հանդիսանում են կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուներ։ Ընտրված 269 դեպուտատից 203-ը կոմունիստներ են և 66-ը՝ անկուսակցականներ։ Դեպուտատների մեջ կա 75 կին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների թվում միաձայն ընտրված են.

Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ— Երևան քաղաքի Գործարանային ընտրական օկրուգ։



Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԸ— Երևան քաղաքի Օրջոնիկիձեի ընտրական օկրուգ։

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԸ— Երևան քաղաքի Ալյումինշինի ընտրական օկրուգ։

Գր. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ— Երևան քաղաքի Երկաթուղային ընտրական օկրուգ։

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎ

11 փետրվարի 1947 թ.
Քաղ. Երևան

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Քաղաքական բուռն խանդավառության, մասսաների աննախընթաց ակտիվության և կազմակերպվածության պայմաններում անցան Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները։

1947 թվականի փետրվարի 9-ը՝ համաժողովրդական այդ հզոր ցույցի օրը հայ ժողովրդի պատմության մեջ մտավ որպես ամենափայլուն մի էջ կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում—կոմունիստների և անկուսակցականների ստալինյան հզոր բլոկը նոր փայլուն հաղթանակ տարավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրություններում։

Հայ ժողովուրդը միահամուռ կերպով ձայն տվեց ստալինյան հզոր բլոկի թեկնածուների օգտին, ցուցադրելով իր բարոյա-քաղաքա-



կան միասնությունը և սերտ համախմբվածությունը սովետական կառավարության, բոլշևիկյան պարտիայի և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։ Այդ են վառ կերպով ցույց տալիս Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովի հրապարակած տվյալները ընտրությունների արդյունքների մասին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների բոլոր 269 ընտրական օկրուգներում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատներ են ընտրված կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուները։

Ընտրություններն անցան աննախընթաց ակտիվությամբ— ձայնի իրավունք ունեցող 713.240 քաղաքացիների ընդհանուր թվից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցեց 713.164 մարդ, որը կազմում է ցուցակագրված ընտրողների ընդհանուր թվի 99,99 տոկոսը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն է տվել 711.747 մարդ, որը կազմում է

քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,81 տոկոսը։

Երևան քաղաքում 147.715 ընտրողներից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին մասնակցել է 147.682 մարդ, կամ ցուցակագրված ընտրողների ընդհանուր թվի 99,98 տոկոսը։

Օկրուգային ընտրական հանձնաժողովների տվյալներով գրանցված է բոլոր 269 դեպուտատների ընտրությունը։ Ընտրված բոլոր դեպուտատները առանց բացառության կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուներն են։

Ընտրված 269 դեպուտատից 203-ը կոմունիստ են և 66-ը անկուսակցական։ Դեպուտատների թվում կա 75 կին։

Սովետական Հայաստանի աշխատավորները միահամուռ կերպով իրենց Ռեսպուբլիկայի գերագույն օրգանի առաջին դեպուտատ ընտրեցին սիրելի առաջնորդ, հայ ժողովրդի լավագույն բարեկամ մեծ Ստալինին։ Երևանի Գործարանային № 1 ընտրական օկրուգի ընտրողները ամբողջ հայ ժողովրդի անունից մեծ ոգևորությամբ ձայն տվին առաջնորդի օգտին։ Եվ երբ Ռեսպուբլիկայի աշխատավորներն իմացան ընտրու-



թյունների արդյունքների մասին, աննկարագրելի էր նրանց ցնծությունը, անսահման էր նրանց բերկրանքը։

Հայ ժողովրդի ընտրյալներն են բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության ականավոր գործիչներ, ընկեր Ստալինի մերձավոր զինակիցներ՝ ռուս մեծ ժողովրդի լավագույն զավակ ընկ. Վ. Մ. Մոլոտովը և հայ ժողովրդի սիրելի զավակ ընկ. Ա. Ի. Միկոյանը, որոնց օգտին միաձայն քվեարկեցին Երևան քաղաքի № 17 Օրջոնիկիձեի և № 48 Ալլիլուևի ... [illegible]

Միաձայն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ է ընտրված Հայաստանի բոլշևիկների ղեկավար՝ ՀԿ(բ)Պ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գրիգոր Արտեմի Հարությունյանը։

Իշխանության գերագույն օրգանի դեպուտատների թվումն են Սովետական Հայաստանի ամենաարժանավոր մարդիկ՝ փառաբանված բանվորներ ու մասնագետներ, կոլխոզային դաշտերի անվանի մարդիկ, սովետական ու պարտիական աշխատողներ, սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները, որոնք իրենց ամբողջ ու-

ժերն ու գիտելիքներն ի սպաս են դնում ժողովրդին անձնվիրաբար ծառայելու գործին։

Սովետական Հայաստանի աշխատավորներն իշխանության գերագույն օրգանն են ուղարկել Ձերժինսկու անվան գործարանի անպարտիական բանվոր Ա. Մատինյանին, որը մոտ կես դար աշխատում է արտադրության մեջ, անվանի հանքափոր՝ ստալինյան նոր հնգամյակի պատվին ծավալված սոցմրցման նախաձեռնող Հ. Ներսիսյանին, Նոյեմբերյանի շրջանի Ստալինի անվան կոլխոզի բրիգադիր Ս. Խոջոյանին, Դարղալուի կոլխոզի օղակավարուհի Պ. Հովհաննիսյանին, երկրի խոշորագույն նորակառույցի՝ Սևանշինի պետ ինժեներ Ա. Մովսեսովին, Բանակի գեներալ, Սովետական Միության Հերոս Ի. Բաղրամյանին, Ստալինյան մրցանակի եռակի լաուրեատ կոմպոզիտոր Ա. Խաչատրյանին, հայ ժողովրդի սիրված պոետ Ավ. Իսահակյանին, պրոֆեսոր Ա. Մելիք-Ադամյանին, վերջերս արտասահմանից վերադարձած բժիշկ Գ. Մանուշակյանին և ուրիշներին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետում ընտրված են կոմունիստներ և անպարտի-



կաններ, հայ ժողովրդի լավագույն զավակներն ու դուստրերը։

Այն վստահությունը, որ ժողովուրդը ցույց է տվել իշխանության գերագույն օրգանում իր պատվիրակներին, նրանց վրա դնում է մեծ պարտավորություններ։ Լինել լենինյան տիպի քաղաքական գործիչներ— ահա թե ինչ է սովորեցնում մեր դեպուտատներին մեծ Ստալինը։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր դեպուտատները կաշխատեն և կկատարեն ժողովրդի կողմից տրված նակազը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները տեղի ունեցան պատասխանատու ժամանակաշրջանում, երբ Սովետական Հայաստանի աշխատավորները անդուլ աշխատանքով պայքարում են Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ պլանների կենսագործման համար։

Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարին Սովետական Հայաստանի աշխատավորները հիմնականում ավարտեցին պլանների կատարումով ու գերակատարումով, դրանով իսկ ամուր նախադրյալներ ստեղծելով 1947 թվականին էլ ավելի հաջող աշխատելու համար։

Անտարակուսելի է, որ ներկա 1947 թվականին մեր Ռեսպուբլիկայի աշխատավորները ձեռք կբերեն է՛լ ավելի նշանակալից հաջողություններ։ Դրա երաշխիքն է հայ ժողովրդի անսահման սերն ու նվիրվածությունը Սովետական կառավարությանը, փառապանծ բոլշևիկյան պարտիային և մեծ առաջնորդ Ստալինին, դրա երաշխիքն է բարոյական-քաղաքական այն միասնությունը, որ կրկին անգամ ցուցադրեց մեր ժողովուրդը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրություններին։

Մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ Սովետական Հայաստանի աշխատավորները ուժ և եռանդ չեն խնայի ստալինյան նոր հնգամյակի հոյակապ պլանների հաջող կենսագործման համար, բոլոր ջանքերը կգործադրեն, որպեսզի մեր սիրելի Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը դառնա ավելի ծաղկուն, ավելի հզոր։

—◆—



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՄԵՆԱՀԶՈՐ ԵՎ ԿՈՓՎԱԾ ԲԱՆԱԿՆ Է

## (Սովետական Բանակի 29-րդ տարեդարձի առթիվ)

1947 թվականի փետրվարի 23-ին լրանում է մեր փառապանծ Սովետական Բանակի գոյության 29 տարին։ Այդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է հետպատերազմյան նոր հնգամյակի երկրորդ տարվա հոյակապ խնդիրների կենսագործման համար ծավալված եռուն աշխատանքի պայմաններում, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների օրերս անցկացված ընտրություններից հետո, երբ փայլուն հաղթանակ տարավ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկը, կրկին անգամ ցուցադրելով մեր ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը, նրա սերտ համախմբվածությունը Լենինի-Ստալինի մեծ պարտիայի

և հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

Հետպատերազմյան խաղաղ շինարարությունը և սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը հնարավոր դարձան այն համաշխարհային-պատմական հաղթանակի շնորհիվ, որ տարավ մեր հերոսական Սովետական Բանակը գերմանական զավթիչների և ճապոնական իմպերիալիստների դեմ, ոչնչացնելով համաշխարհային ֆաշիզմի ու ագրեսիայի օջախները Արևմուտքում և Արևելքում։

***

Հերոսամարտերի բոցերում է ծնունդ առել Սովետական պետության փառապանծ բանակը։

Մեր երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկան իր գոյության հենց առաջին օրերից ստիպված էր կատաղի պայքար մղել ներքին և արտաքին թշնամիների դեմ, որոնք ձգտում էին ոչնչացնել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Երկիրը, ստրկացնել նրա ժողովուրդներին։ Թշնամիների այդ ոտնձգությունները ջախջախելու, մեր երկրի գոյությունը պահպանելու համար մենք պետք է ունենայինք սեփական հզոր բանակ։



Եվ ահա, բոլշևիկների պարտիայի ու Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը 1918 թվականի հունվարի 28-ին դեկրետ ստորագրեց Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ ստեղծելու մասին։

Այդ ժամանակից ի վեր Սովետական Բանակը բոլշևիկների պարտիայի, Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ աճեց և ամրապնդվեց բոլոր ու ամեն տեսակ ինտերվենտների, մեր Հայրենիքի թշնամիների դեմ մղված մարտերում։

Երիտասարդ Կարմիր Բանակի զորամասերն իրենց առաջին հարվածները ստիպված եղան ուղղել վիլհելմյան Գերմանիայի բանակի դեմ, որը 1918 թվականի փետրվարի 18-ին վիթխարի ճակատով հարձակման անցավ Սովետական Ռեսպուբլիկայի վրա։ Դրանք ծանր օրեր էին մեր Հայրենիքի համար։ Սովետական Կառավարության կոչով մեր երկրի աշխատավորներն ուժեղ թափով սկսեցին կազմակերպել Կարմիր Բանակի զորամասեր, որոնք հերոսաբար ետ էին մղում գերմանական հրոսակախմբերի գրոհները։

Դեռևս անփորձ, վատ զինված Կարմիր Բանակը 1918 թվականի փետրվարի 23-ին

Պսկովի և Նարվայի մոտ գլխովին ջախջախեց գերմանական իմպերիալիստների մինչև ատամները զինված զորքերին։

Այդ օրն էլ հենց, 1918 թվականի փետրվարի 23-ը, դարձավ մեր հերոսական Կարմիր Բանակի ծննդյան օր։

Բայց իմպերիալիստական գիշատիչները չէին հրաժարվում աշխարհում միակ սոցիալիստական պետությունը ոչնչացնելու մտքից։ Եվ այդ նույն 1918 թվականին նրանք իրենց սպառազինված բանակներով ինտերվենցիա կազմակերպեցին մեր երկրի դեմ։ Իմպերիալիստական 14 պետություններ միացյալ ուժերով հարձակվեցին մեզ վրա։ Նրանց աջակցում էին ներքին կոնտրռևոլուցիայի ուժերը։

Սովետական Բանակը քաղաքացիական կռիվների տարիներին բոլշևիկների պարտիայի և նրա առաջնորդներ Լենինի ու Ստալինի ղեկավարությամբ ջախջախեց մինչև ատամները զինված ինտերվենտների զորքերին՝ Կոլչակի, Կրասնովի, Յուդենիչի, Դենիկինի, Վրանգելի սպիտակգվարդիական բանակներին, սպիտակ լեհերին, վերջնականապես ազատագրեց ինտերվենտներից երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկայի



տերիտորիան, ամուր հիմք ստեղծեց Սովետական Միության ժողովուրդների խաղաղ աշխատանքի և սոցիալիստական շինարարության համար։

* * *

Խաղաղ շինարարության տարիներին բոլշևիկյան պարտիան և Սովետական կառավարությունը ոչ մի րոպե չէին մոռանում կապիտալիստական շրջապատման վտանգը և միշտ հոգ էին տանում Սովետական Բանակի ուժն ու հզորությունն ամրապնդելու մասին։ Ընկեր Ստալինն օր ավուր հոգում էր Սովետական Բանակի հզորացման, նրա մարտիկների և հրամանատարների դաստիարակության ու աճեցման, նրա զորամասերի մարտական ուսուցումը կատարելագործելու մասին։

Ստալինյան հնգամյակների կենսագործումը Սովետական Միությունը դարձրեց առաջավոր, հզոր ինդուստրիալ տերություն, հնարավորություն տալով արմատապես վերազինելու Սովետական Բանակը, տալու նրան առաջնակարգ մարտական տեխնիկա։

Սովետական Բանակը միշտ արթուն կանգնած է եղել մեր Հայրենիքի սրբազան սահմանների պաշտպանության դիրքերում,

պաշտպանելով Սովետական երկրի՝ շինարար սոցիալիստական շինարարությունը ամեն տեսակ թշնամիների ոտնձգություններից։
Սովետական Բանակի ուժն ու հզորությունը իրենց կաշվի վրա զգացել են մեր Հայրենիքի բոլոր ու ամեն տեսակի թշնամիները, երբ նրանք փորձել են խանգարել մեր ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը։
1938 թվականին, երբ ճապոնական սամուրայները մեր երկրի վրա հարձակվեցին Խասան լճի շրջանում, Սովետական Բանակը ջախջախեց և մեր երկրի սահմաններից դուրս շպրտեց ճապոնական զավթիչներին։
1939 թվականին ճապոնական իմպերիալիստների երկրորդ պրովոկացիայի ժամանակ, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիայում՝ Խալխին-Գոլի մոտ, Սովետական Բանակի զորքերը շրջապատեցին և գլխովին ջախջախեցին ճապոնական սամուրայներին։
Երբ սկսվեց համաշխարհային երկրորդ պատերազմը և գերմանա-ֆաշիստական զորքերը հարձակվեցին Լեհաստանի վրա, Սովետական Բանակը պաշտպանության տակ առավ Արևմտյան Ուկրաինայի և



Արևմտյան Բելոռուսիայի եղբայրական ժողովուրդներին և նրանց փրկեց լեհական պաների ճնշումից։
1939-1940 թ. թ. Ֆինլանդիայի դեմ մղված պատերազմում Սովետական Բանակը հյուսիսի դաժան ձմռան պայմաններում ջախջախեց սպիտակֆիններին, ապահովեց Լենինգրադի անվտանգությունը, ֆիննական կառավարողներին ստիպեց հաշտություն խնդրել։

***

Սովետական Բանակի և սովետական ժողովրդի համար ամենածանր փորձություն հանդիսացավ 1941-1945 թ. թ. Հայրենական Մեծ պատերազմը ընդդեմ գերմանական զավթիչների։
Սովետական բազմամիլիոն ժողովուրդն ապրում էր իր խաղաղ աշխատանքով, երջանիկ կյանք էր կառուցում իր համար, երբ 1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա։ Նրա 170 ընտիր դիվիզիաները և ֆաշիստական դաշնակից պետությունների 60 դիվիզիաներ հանկարծակի ներխուժեցին մեր Հայրենիքի տերիտորիան։ Հիտլերյան ոճրագործ բանդաները, Արև-

 

մուտքում իրենց հեշտ հաղթանակներով արբեցած, հույս ունեին կայծակնային հարվածով ջախջախել Սովետական Բանակը, տիրանալ մեր Հայրենիքի անհամար հարստություններին, ստրկացնել ՍՍՌՄ ազատ ժողովուրդներին։

Մեծ առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի կոչով Սովետական Բանակն ու սովետական ժողովուրդը արբաղան Հայրենական պատերազմի ելան հանուն մեր Հայրենիքի պատվի, անկախության և ազատության։

Պատերազմի առաջին ամիսներին, հանկարծակի հարձակման և ռազմական տեխնիկայի քանակական գերակշռության շնորհիվ, գերմանա-ֆաշիստական բանակները, չնայած հսկայական կորուստներին, կարողացան ձեռք բերել ժամանակավոր հաջողություններ, հասնելով մինչև Մոսկվայի և Լենինգրադի մատույցները։

Սովետական Բանակը ընկեր Ստալինի ստրատեգիական պլանով կործանիչ հակահարված տվեց թշնամուն Ռոստովի ու Տիխվինի մոտ, Ղրիմում ու Մոսկվայի մոտ։ Դրանով իսկ նա ջախջախեց գերմանական բանակի անպարտելիության առասպելը,



ցույց տվեց, որ գերմանացիներին կարելի է հաջողությամբ ջախջախել։

Հիտլերականների 51 դիվիզիաների ջախջախումը Մոսկվայի մոտ՝ 1941 թվականի դեկտեմբերին և գերմանա-ֆաշիստական զորքերի դեմ մեր Բանակի հետագա հարվածները ցույց տվին ամբողջ աշխարհին նրա աճող հզորությունը։

Օգտվելով Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, գերմանացիներն ու նրանց դաշնակիցները 1942 թվականի ամռանն ու աշնանը Հարավ-Արևմտյան ուղղությամբ առաջ շարժեցին իրենց բոլոր ազատ ռեզերվները, ստեղծեցին ուժերի մեծ գերակշռություն և հասան մինչև Մոզդոկ, Կովկասի նախալեռներն ու Ստալինգրադի շրջանը։

Թշնամին նպատակ էր դրել ոչ միայն զավթել մեր երկրի համար չափազանց կարևոր այդ շրջանները, այլև գլխավորապես, զբաղեցնել մեր ռեզերվները Հարավում, իրագործելու համար իր գլխավոր ստրատեգիական պլանը, այն է՝ շրջանցել Մոսկվան արևելքից, այն կտրել Վոլգայի և ուրալյան

թիկունքից ու հարված հասցնել Մոսկվայի ուղղությամբ։

Բայց այս անգամ էլ գերմանական հրամանատարության ստրատեգիական պլանները խայտառակ կերպով տապալվեցին։ Հայրենիքը Սովետական Բանակից պահանջեց ոչ մի քայլ չնահանջել, ի՛նչ գնով էլ լինի փակել թշնամու ճանապարհը, կանգնեցնե՛լ նրան, ե՛տ շպրտել ու ոչնչացնել։

1942 թվականի նոյեմբերի 19-ից մինչև 23-ը Ստալինգրադի, Հարավ-Արևմտյան և Դոնի ռազմաճակատների զորքերը, կատարելով Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հանճարեղ ստրատեգիական պլանը, անցան հարձակման։ Նախաձեռնությունը վերցնելով՝ մեր Բանակի զորամասերը ճեղքեցին գերմանացիների պաշտպանությունը Ստալինգրադի շրջանում, ջախջախեցին թշնամու 36 դիվիզիա և շրջապատեցին 22 դիվիզիա, ոչնչացրին և գերի վերցրին հակառակորդի 330 հազար զինվոր ու սպա։ Ստալինգրադյան ճակատամարտը «գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտն էր» (Ստալին)։

Զարգացնելով Ստալինգրադի շրջանում



ձեռք բերած հաջողությունը, Սովետական Բանակը 1943 թվականի ձմեռային հարձակման հետևանքով, որ սկսվեց մի վիթխարի ճակատով՝ Լենինգրադից մինչև Կովկաս, կարճ ժամանակամիջոցում առաջ շարժվեց դեպի արևմուտք, որոշ հատվածներում մինչև 700 կիլոմետր, ջախջախեց գերմանական 112 դիվիզիա, ոչնչացրեց ու գերի վերցրեց թշնամու ավելի քան մեկ միլիոն 190 հազար զինվոր ու սպա։

Արդեն 1943 թվականի ամռանը, նույնիսկ տոտալ զորահավաք հայտարարելուց հետո էլ, գերմանացիները Օրյոլ—Կուրսկի և Բելգորոդ—Կուրսկի ուղղությամբ չկարողացան հարձակվել տասն օրից ավելի, չնայած որ մի նեղ հատվածում նրանք կենտրոնացրել էին 17 տանկային ու 11 հետևակային դիվիզիա։

Սովետական Բանակը վճռական հարձակման անցնելով ջախջախեց գերմանա-ֆաշիստական բանակներին Կուրսկի ու Բելգորոդի ուղղությամբ և թշնամու զորքերին կանգնեցրեց կատաստրոֆի առաջ։ Այդ հարձակման հետևանքով մեր Բանակն ազատագրեց գերմանացիների կողմից օկուպացված սովետական տերիտորիայի երկու երրորդ մասը,

գերմանացիները կորցրին իրենց կադրային դիվիզիաների մեծ մասը։

Սովետական Բանակի հաջող գործողությունների և Հյուսիսային Աֆրիկայում մեր դաշնակիցների բանակների գործողությունների հետևանքով, Իտալիան կապիտուլացիայի ենթարկվեց։ Այդպիսով հիտլերյան պետության դաշնակիցներից մեկը հանվեց շարքից։

1944 թվականի ապրիլի 10-ին Ուկրաինական չորրորդ ռազմաճակատի զորքերը, Առափնյա առանձին բանակի փոխգործողությամբ, հարձակման անցան և մայիսի 12-ին ամբողջապես ազատագրեցին Ղրիմը։ Ղրիմի և հատկապես Կերչ ու Սևաստոպոլ քաղաքների ազատագրմանը մասնակցեց Հայկական՝ Կարմիր Դրոշի, Կուտուզովի 2-րդ աստիճանի և Կարմիր Աստղի շքանշանակիր Թամանյան հրաձգային դիվիզիան։

1944 թվականի հունիսի 23-ին սկսվեց Սովետական Բանակի ամառային մեծ հարձակումը։ Հարձակման 11 օրվա ընթացքում մեր զորքերը, առաջ շարժվելով 320 կիլոմետր, գրավեցին Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկը։ 1944 թ. հուլիսի 27-ին, միայն մեկ օրում, մարշալ Կոնևի զորքերը



գրավեցին Ստանիսլավ և Լվով քաղաքները,
բանակի գեներալ Երեմենկոյի զորքերը՝
Դվինսկ և Ռեժիցա քաղաքները, բանակի
գեներալ Բաղրամյանի զորքերը՝ Շաուլյայ
քաղաքը, գեներալ-գնդապետ Զախարովի
զորքերը՝ Բելոստոկը։ Այդ օրը մեր Հայրե-
նիքի մայրաքաղաք Մոսկվան հինգ անգամ
սալյուտ տվեց իր հաղթական զորքերին։

Պատերազմի ընթացքում գերմանական
բանակի հարձակման տեմպերն ու մասշ-
տաբները հետզհետե նվազում էին, և, ընդ-
հակառակը, հանճարեղ զորավար ընկեր
Ստալինի իմաստուն ղեկավարության շնոր-
հիվ, Սովետական Բանակի հարձակողական
գործողությունների տեմպերն ու մասշտաբ-
ները գնալով աճում էին։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների
ջախջախման ստալինյան ստրատեգիական
պլանի փայլուն կենսագործումը հնարավո-
րություն տվեց ազատագրելու թշնամուց մեր
տերիտորիան։ Սովետական Բանակի հար-
վածների տակ շարքից հանվեցին Գերմա-
նիայի դաշնակիցներ Ռումինիան, Բուլղա-
րիան, Ֆինլանդիան և Հունգարիան, որոնք
պատերազմ հայտարարեցին Գերմանիային։

Կատարելով իր ազատագրական միսիան, Սովետական Բանակը մեր դաշնակից Հարավսլավիային օգնեց վռնդելու երկրից գերմանացիներին և ազատագրելու Բելգրադը, օգնություն ցույց տվեց Լեհաստանի ու Չեխոսլովակիայի ժողովուրդներին՝ ազատագրվելու ֆաշիստական ստրկությունից։

Բեռլինի գրավման օպերացիայով ավարտվեց Գերմանիայի լիակատար ռազմական ջախջախումը։ Բեռլինի ճակատամարտը ստալինյան ռազմական արվեստի փայլուն տրիումֆն էր, Սովետական Բանակի մարտական փառքի պսակը։ Բեռլինի վրա գրոհի նետվեց ավելի քան 4 հազար տանկ՝ 22 հազար հրանոթի ու ականանետի կրակի աջակցությամբ։ Հարվածն օդից ուղեկցվում էր 4—5 հազար ինքնաթիռի գործողություններով։ Միայն մեկ օրում կատարվեց 17 հազար ինքնաթիռ-թռիչք։ Գերմանական պաշտպանությունը չդիմացավ Սովետական Բանակի հուժկու հարվածներին, և գերմանական ագրեսիայի օջախ, գերմանական իմպերիալիզմի կենտրոն Բեռլինն ընկավ 12 օրում։ Գերմանական զորքերի կազմակերպված դիմադրությունը դադարեց։ 1945 թ. մայիսի 8-ին ֆաշիստական Գերմա-



նիան անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվեց։ Հասավ գերմանական ֆաշիզմի դեմ մեր հաղթանակի պատմական օրը։

Սովետական Բանակը Հայրենական պատերազմում պաշտպանեց մեր երկիրը, նրա ժողովուրդների ազգային ինքնուրույնությունը, ազատությունն ու անկախությունը։ Իրագործվեցին ուկրաինական և բելոռուսական ժողովուրդների դարավոր իղձերը— այժմ Սովետական Ուկրաինան և Սովետական Բելոռուսիան միավորում են ուկրաինական ու բելոռուսական բոլոր հողերը, լիովին վերամիավորված է մոլդավական ժողովուրդը։ Սովետական Միությանը միացվեց Քյոնիգսբերգի (այժմ Կալինինգրադի) մարզը, վերականգնված է մեր սահմանը Ֆինլանդիայի հետ, Սովետական Միությանն է վերադարձված Պեչենգայի շրջանը։

Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի հետևանքով մեր երկրին են վերադարձված Հարավային Սախալինը և Կուրիլյան կղզիները։

Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվեց դեմոկրատական երկրների լիակատար հաղթությամբ Արևմուտքում և Արևելքում։

Սովետական Բանակը, որը կազմված է ՍՍՌՄ-ում բնակվող բոլոր ժողովուրդների զավակներից, ոգեշնչված լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությամբ, ուներ վեհ ու ազնիվ նպատակ— իր Հայրենիքի պաշտպանությունը։ Անդրկովկասյան, Միջին-Ասիական ժողովուրդների զավակները ռուս, ուկրաինական, բելոռուս ժողովուրդների զավակների հետ ձեռք-ձեռքի տված՝ կրծքով պաշտպանում էին իրենց փառապանծ մայրաքաղաք Մոսկվան, պաշտպանում էին Լենինգրադը։

Հայրենիքի պաշտպանության գաղափարը յուրաքանչյուր օր հերոսներ էր ծնում Հայրենական պատերազմի ճակատներում։ Մատրոսովը, Սմիրնովը, Հունան Ավետիսյանը, Զոյա Կոսմոդեմյանսկայան և շատ ուրիշներ ստալինյան դարաշրջանի մարդիկ են, Լենինի-Ստալինի պարտիայի սաները, որոնք հանդես բերեցին մեծագույն նվիրվածություն Հայրենիքին։ Հայրենական պատերազմի ընթացքում Սովետական Միության Հերոսի բարձր կոչում ստացան 10.511 մարդ, կրկնակի հերոսի կոչում՝ 93 մարդ։ Սովետական Միության հերոսների մեջ կան 56 ազգությունների



ներկայացուցիչներ, այդ թվում 100-ից ավելի հայեր։

Ընկեր Ստալինն աճեցրեց Սովետական Բանակի հիանալի զորավարների՝ մարշալների և գեներալների մի ամբողջ սերունդ, որոնց անուններով հպարտանում է սովետական ժողովուրդը, որոնք փայլուն կերպով իրագործեցին հիտլերյան Գերմանիայի ջախջախման ստալինյան ստրատեգիական մեծ պլանը։

***

Հայրենական պատերազմի ճակատներում երկրի լավագույն մարդիկ չխնայելով իրենց կյանքը, մարտնչում էին գազազած թշնամու դեմ։ Թիկունքում ամբողջ սովետական ժողովուրդը՝ տղամարդիկ ու կանայք, ֆաբրիկաներում և գործարաններում, հանքահորերում և տրանսպորտում, գյուղատնտեսության մեջ կատարվող ազնիվ ու անձնվեր աշխատանքով աջակցում էին ռազմաճակատին։ Սովետական ժողովուրդը աշխատանքային ճակատում հերոսություններ էր կատարում, իր հարազատ Բանակին մատակարարելով ամեն բան, ինչ անհրաժեշտ էր հաղթանակի համար։

Պատերազմի տարիներին միայն Կիրովյան տանկային գործարանը Սովետական Բանակին տվեց 18 հազար տանկ և ինքնընթաց հրանոթ։ Ստալինի անվան հրետանային գործարանը, որի դիրեկտորն է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Ելյանը, Սովետական Բանակին տվեց 160 հազար հրանոթ։

Ընդհանուր առմամբ մեր տանկայ'ն արդյունաբերությունը պատերազմի վերջին երեք տարվա ընթացքում յուրաքանչյուր տարի արտադրում էր ավելի քան 30 հազար տանկ, ինքնընթաց հրանոթ ու զրահամեքենա։ Ավիացիոն արդյունաբերությունն արտադրում էր տարեկան մոտ 40 հազար ինքնաթիռ։ Հրետանային արդյունաբերությունը տալիս էր ամեն կալիբրի 120 հազար հրանոթ, 450 հազար ձեռքի և հաստոցավոր գնդացիր, ավելի քան երեք միլիոն հրացան, երկու միլիոն ավտոմատ և 100 հազար ականանետ։

Կոլխոզային գյուղացիությունն անձնվեր աշխատանքով անընդմեջ հացով և պարենամթերքով էր մատակարարում մեր արդյունաբերությանն ու բանակին։ Սովետական կանայք պատերազմի օրերին մեծ ուժ դար-



ձան արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ։ Սովետական մարդկանց ստացած ավելի քան 8 միլիոն կառավարական բարձր պարգևները լավագույն վկայությունն են այն մասսայական հերոսության, որով իրենց փառաբանեցին Սովետական Միության ժողովուրդները Հայրենական Մեծ պատերազմում։

Բանվոր դասակարգից ու կոլխոզային գյուղացիությունից հետ չմնաց նաև մեր սովետական ինտելիգենցիան, որն իր բոլոր ուժերն ու գիտելիքները ի սպաս դրեց Հայրենիքի պաշտպանությանը, ստեղծագործաբար կիրառելով գիտության նվաճումները մեր Բանակի սպառազինման գործում։

Պատերազմի ընթացքում սովետական ժողովուրդը, բացի ռազմաճակատի համար կատարած անձնվեր աշխատանքը, անձնական խնայողություններից երկրի պաշտպանության ֆոնդը մուծեց 14 միլիարդ ռուբլի, թշնամու թիկունքում կազմակերպեց պարտիզանական ջոկատներ և միայն այդ եղանակով ոչնչացրեց թշնամու ավելի քան 500 հազար զինվոր ու սպա։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները ռազմաճակատում և թիկունքում հա-

մախմբվեցին իրենց ավագ եղբոր՝ ռուս Մեծ ժողովրդի շուրջը և ընդհանուր, համերաշխ ջանքերով ջախջախեցին թշնամուն։ Ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած հաղթանակը բազմապատկեց ռուս ժողովրդի և մեր երկրի բոլոր ժողովուրդների փառքը։

Մեր բազմազգ երկրի եղբայրական ժողովուրդների հերոսական պայքարին ակտիվ մասնակցություն ունեցավ նաև Հայ ժողովուրդը։ Հայ ժողովուրդն իրավունք ունի հպարտանալու, որ Սովետական Բանակի այն միավորումների թվում Հայկական եռակի շքանշանակիր Թամանյան դիվիզիան ևս հաղթանակով մտավ Բեռլին և մասնակցեց գերմանական ֆաշիզմի ջախջախմանը նրա որջում։ Դրանով իսկ նա հայ ժողովրդի հերոսական պատմության մեջ գրեց ազատագրական պատերազմում իր մարտական սխրագործությունների նոր էջեր։

***

Սովետական Բանակի և սովետական ժողովրդի հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպողը Հայրենական Մեծ պատերազմում հանդիսացավ Լենինի-Ստալինի բոլշևիկյան պարտիան։ Մեր Բանակի հաջողու-



թյունները հնարավոր դարձան, որովհետև մենք ունենք այնպիսի պարտիա, որը հրակայական վստահություն ու հեղինակություն է վայելում ժողովրդի մեջ։

ՍՍՌՄ-ի վրա ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակման ծանր օրերին մեծ Ստալինի հանճարը ոգեշնչում էր սովետական ժողովրդին ու Սովետական Բանակին՝ սրբազան պայքար մղելու նենգ թշնամու դեմ։

Պատերազմի ժամանակաշրջանում չի եղել ոչ մի խոշոր մարտական օպերացիա, որ անմիջականորեն չղեկավարեր ընկեր Ստալինը։ Սովետական Բանակի բոլոր փառապանծ հաղթանակները ձեռք են բերվել շնորհիվ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարության, նրա զորավարական հանճարի։

Ստալինյան արտաքին քաղաքականությունը վիժեցրեց հիտլերականների պլանները ՍՍՌՄ-ը մեկուսացնելու բնագավառում, և սովետական ժողովրդի ու մեր Բանակի համար ապահովեց միջազգային բարենպաստ իրադրություն։ Պատերազմի ընթացքում ստեղծվեց մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի, Անգլիայի և ԱՄՆ-ի հզոր կոալիցիան։ Սովետական Բանակը պատերազմից

դուրս եկավ իբրև աշխարհում ամենաառա-ջավոր ու ամենահզոր բանակ։

Մեր քաջարի Սովետական Բանակը կրկին ու կրկին անգամ ամբողջ աշխարհի առաջ ցուցադրեց իր ուժն ու հզորությունը, երբ դաշնակցային պարտքին հավատարիմ նա պատերազմ հայտարարեց իմպերիալիստա-կան Ճապոնիային։ Չնայած մարտական գոր-ծողությունների դժվար պայմաններին, Սո-վետական Բանակի հուժկու հարվածների տակ, մեկ ամսվա մարտերից հետո, Կվան-տունյան բանակը ցած դրեց զենքը և ճա-պոնական իմպերիալիստները նույնպես, ինչպես որ գերմանական ֆաշիստները, ան-վերապահ կապիտուլյացիայի ենթարկվեցին։

Երկրորդ համաշխարհային պատերազմը վերջացավ գերմանական ֆաշիստների և ճա-պոնական իմպերիալիստների դեմ Սովետա-կան Միության ու նրա դաշնակիցների լիա-կատար հաղթանակով։

Ի՞նչ է նշանակում այդ։

«Մեր հաղթանակը նշանակում է, ամենից առաջ, որ հաղթեց մեր սովետական հասա-րակարգը, որ սովետական հասարակարգը հաջողությամբ դիմացավ փորձությանը պա-տերազմի բոցերում և ապացուցեց իր լիա-



կատար կենսունակությունը.... Մեր հաղթա-նակը նշանակում է, երկրորդ, որ հաղթեց մեր սովետական պետական կարգը, որ մեր բազմազգ սովետական պետությունը դիմա-ցավ պատերազմի բոլոր փորձություններին և ապացուցեց իր կենսունակությունը... Մեր հաղթանակը նշանակում է, երրորդ, որ հաղթեցին սովետական զինված ուժերը, հաղթեց մեր Կարմիր Բանակը... Կարմիր Բանակը այն նույն բանակն է, որը գլխո-վին ջախջախեց գերմանական բանակին, որ դեռևս երեկ սարսափ էր ազդում եվրոպա-կան պետությունների բանակների վրա։

...Սոցիալիստական արդյունաբերությու-նը, կոլխոզային կարգերը, մեր երկրի ժո-ղովուրդների բարեկամությունը, սովետա-կան պետությունը ցույց տվին իրենց ամրու-թյունն ու անխորտակելիությունը» (Ստալին):

***

Հայրենական մեծ պատերազմի հաղթա-կան ավարտումից հետո սովետական ժո-ղովուրդը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, ձեռնամուխ է եղել գեր-մանական բարբարոսների ավերած ժողովր-դական տնտեսության վերականգնմանը։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից մեր ժողովրդական տնտեսությանը և մեր քաղաքացիներին պատճառված միայն ուղղակի վնասը Պետական Արտակարգ Հանձնաժողովը հաշվել է 679 միլիարդ ռուբլի՝ պետական գներով։

Նոր հնգամյա պլանը նախատեսում է մեր ժողովրդական տնտեսության վերականգնումը և մեր երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդումը։

Միևնույն ժամանակ՝ «Քանի դեռ մենք ապրում ենք «պետությունների սիստեմում» և ֆաշիզմն ու իմպերիալիստական ագրեսիան դեռ վերջնականապես արմատախիլ չեն արվել, մեր զգաստությունը խաղաղության հնարավոր նոր խախտողների նկատմամբ չպետք է թուլանա» (Մոլոտով)։

Ուստի Սովետական Բանակի ամենաառաջնահերթ խնդիրն է՝ այսուհետև էլ կանգնած լինել մեր Հայրենիքի ազատության և անկախության, սոցիալիզմի նվաճումների պահպանության դիրքում, լինել ժողովուրդների միջև խաղաղության հուսալի հենարանը, մեր խաղաղ սոցիալիստական շինարարության արթուն պահապանը։

---

# ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԼԻԱԶՈՐԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1946 ԹՎԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՍՌՄ Պետպլանի Լիազորի Վիճակագրական Վարչության տվյալներով Հայկական ՍՍՌ-ում 1946 թվին՝ հետպատերազմյան հնգամյակի առաջին տարում արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատանքը, կապիտալ աշխատանքների և մանրածախ ապ. ապրանքաշրջանառության ծավալը, կադրերի պատրաստումը և կուլտուրական շինարարությունը բնութագրվում են հետևյալ տվյալներով.

## I

1946 թվի համախառն արտադրանքի արտադրության պլանը Հայկական ՍՍՌ առանձին մինիստրությունների ձեռնարկությունները կատարել են հետևյալ կերպ.

ա) Միութենական ենթակայության ձեռնարկությունների գծով.

| | 1946 թվի տարեկան պլանի կատարման տոկոսը |
|---|---|
| Գունավոր մետալուրգիայի մինիստրություն | 122 |
| Էլեկտրակայանների մինիստրություն | 104 |
| Քիմիական արդյունաբերության մինիստրություն | 102 |
| Էլեկտրաարդյունաբերության մինիստրություն | 75 |
| Ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրություն | 162 |
| Դազգահաշինության մինիստրություն | 134 |
| Մեքենաշինության և գործիքաշինության մինիստրություն | 56 |
| ՍՍՌՄ Շինանյութերի արդյունաբերության մինիստրություն | 103 |
| Ռետինի արդյունաբերության մինիստրություն | 74 |
| ՍՍՌՄ Սննդի արդյունաբերության մինիստրություն | 107 |



| | |
|---|---|
| ՍՍՌՄ Համի արդյունաբերության մինիստրություն | 121 |

բ) Միութենական-ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկությունների գծով.

| | |
|---|---|
| Շինանյութերի արդյունաբերության մինիստրություն | 64 |
| Անտառային արդյունաբերության մինիստրություն | 38 |
| Տեքստիլ արդյունաբերության մինիստրություն | 73 |
| Թեթև արդյունաբերության մինիստրություն | 87 |
| Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրություն | 112 |
| Սննդի արդյունաբերության մինիստրություն | 91 |
| Այդ թվում շրջանային արդյունաբերություն | 71 |
| Համի արդյունաբերության մինիստրություն | 103 |
| Ձկնարդյունաբերության մինիստրություն | 80 |

գ) Ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկությունների գծով.

| | |
|---|---|
| Տեղական արդյունաբերության մինիստրություն | 93 |
| Այդ թվում շրջանային արդյունաբերություն | 95 |
| Արհեստագործական կոոպերացիա | 102 |
| Հաշմանդամների կոոպմիություն | 96 |

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը ամբողջությամբ վերցրած 1946 թվին 1945 թվի համեմատությամբ աճել է 18 տոկոսով։

## II

1946 թվին արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը 1945 թվի համեմատությամբ փոխվել է հետևյալ կերպ.

| | Տոկոսներով 1946 թվին 1945 թվի համեմատությամբ |
|---|---|
| Սև պղինձ | 123 |
| Պղնձի հանքաքար | 103 |
| Էլեկտրոէներգիա | 99,6 |
| Մետաղահատ դազգահներ | 32 անգամ |
| Ձիաքարշ գութաններ | 95 |
| Ամանեղեն (ալյումինե և ցինկապատված) | 37 անգամ |
| Կաուստիկ սոդա | 73 |
| Հանքային պարարտանյութեր (սուպերֆոսֆատ և ազոտային) | 99 |
| Պղնձի արջասպ | 176 |
| Ավտոդողեր | 257 |
| Փայտանյութի փոխադրում անտառից | 90 |
| Վառելանյութի փոխադրում | 104 |
| Սղոցանյութ | 109 |



| | |
|---|---|
| Ցեմենտ | 163 |
| Կղմինդր | 57 |
| Աղյուս | 157 |
| Տուֆ | 144 |
| Պեմզաբլոկներ | 262 |
| Կիր | 386 |
| Գրեժա | 139 |
| Բամբակեղեն գործվածքներ | 79 |
| Մետաքսե գործվածքներ | 110 |
| Բամբակի թել | 139 |
| Բամբակի մանվածք | 84 |
| Գուլպաներ | 129 |
| Վրայից հագնվող տրիկոտաժ | 115 |
| Սպիտակեղենի տրիկոտաժ | 161 |
| Կաշվե կոշիկ | 98 |
| Կոշտ կաշի | 93 |
| Խրոմի կաշի | 130 |
| Մուշտակի մորթի | 135 |
| Միս | 126 |
| Կենդանական յուղ | 160 |
| Բուսական յուղ | 119 |
| Ձուկ | 81 |
| Օճառ | 111 |
| Հաց և բուլկեղեն | 134 |
| Հրուշակեղեն | 108 |
| Մակարոն | 115 |

| | |
|---|---|
| Կոնյակ | 120 |
| Գլանակներ | 257 |
| Խաղողի գինի | 127 |
| Գարեջուր | 112 |
| Անալկոհոլ խմիչքներ | 129 |

Նախկինում ոչ քաղաքացիական արտադրանքի պատվերներով զբաղված արդյունաբերության ձեռնարկությունների մի մասը հնգամյա պլանի առաջադրանքին համապատասխան 1946 թվի ընթացքում հիմնականում ավարտեց արդյունաբերական արտադրության հետպատերազմյան վերակառուցումը։

1946 թվին յուրացվել է էլեկտրական-քենցային իրերի, տրանսֆորմատորների, կոմպրեսորների, ռուսամուտի ապակու, բրդեղեն գործվածքների և կորդի արտադրությունը։

1946 թվին ծավալվել է մետաղահատ դազգահների, զարթուցիչ ժամացույցների և ավտոդողերի արտադրությունը։ Տեղական արդյունաբերության ձեռնարկությունները յուրացրել և մասսայական մասշտաբով թողարկում են մետաղե ամաններ և մահճակալներ, ինչպես նաև ապակուց և պլաստմասսայից պատրաստված իրեր։



III

1946 թվին Հայկական ՍՍՌ կոլխոզների գծով ցանքի պլանը կատարված է 101 տոկոսով, որից հացահատիկային կուլտուրաների գծով՝ 101 տոկոսով, տեխնիկական կուլտուրաների գծով՝ 102 տոկոսով, բանջարեղենի ու կարտոֆիլի գծով՝ 94 տոկոսով և կերախոտերի գծով՝ 72 տոկոսով։ Բամբակենու, շաքարի ճակնդեղի և ծխախոտի գծով ցանքի պլանը լրիվ կատարված է։

1946 թվի վաղ աշնանը (հոկտեմբերի առաջին կեսում) սկսված վաղաժամ սառնամանիքը և ձյունը անբարենպաստ կերպով ազդեցին Հայկական ՍՍՌ լեռնային շրջաններում հացահատիկի կալսման և բանջարեղենի ու կարտոֆիլի բերքահավաքի վրա, ինչպես նաև դաշտային շրջաններում բամբակենու կնգուղների հասունացման վրա։ Չնայած դրան, 1946 թվին հացահատիկային կուլտուրաների գծով ստացվեց ավելի բարձր համախառն բերք, քան 1945 թվին։ 1945 թվի համեմատությամբ 1946 թվի համախառն բերքը հացահատիկային կուլտուրաների գծով բարձր է 3,7 տոկոսով, բամբակի գծով՝ 8,1 տոկոսով, շաքարի ճակընդեղի գծով՝ 13,2 տոկոսով, ծխախոտի

գծով՝ 13,3 տոկոսով և կարտոֆիլի գծով՝ 3,2 տոկոսով։

1946 թվին ամենաբարձր բերքը հացահատիկային կուլտուրաների գծով ստացել են Թալինի, Նոր Բայազետի, Մարտունու, Աշտարակի և Ախտայի շրջանների կոլխոզները, ծխախոտի գծով՝ Շամշադինի, Աշտարակի, Իջևանի, Թալինի և Ղարաբաղլարի շրջանների կոլխոզները, բամբակի գծով՝ Արտաշատի շրջանի կոլխոզները։

Անցած տարվա ընթացքում Հայաստանի կոլխոզները զգալիորեն ընդլայնեցին բազմամյա տնկիների տարածությունները։ 1946 թվին 1945 թվի համեմատությամբ նոր տնկված խաղողի այգիների տարածությունը կազմել է 133 տոկոս, իսկ նոր տնկված պտղատու այգիների տարածությունը՝ 155 տոկոս։ Խաղողի լավագույն բերք 1946 թվին ստացել են Արտաշատի և Միկոյանի շրջանների կոլխոզները։

1946 թվին աճել է Հայկական ՍՍՌ անասունների գլխաքանակը։ Նախնական տվյալներով մինչև 1947 թվի հունվարի 1-ը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1946 թվի հունվարի 1-ի համեմատությամբ ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած կազմել է 101,5 տոկոս, ո-



րից կոլխոզներում՝ 102,0 տոկոս, ոչխարների և այծերի գլխաքանակը համապատասխանորեն՝ 105,0 տոկոս, որից կոլխոզներում՝ 108,5 տոկոս, ձիերի գլխաքանակը՝ 111,3 տոկոս, որից կոլխոզներում՝ 112,1 տոկոս, խոզերի գլխաքանակը կոլխոզներում՝ 110,3 տոկոս։

## IV

Կապիտալ աշխատանքների ծավալը 1946 թվին Հայկական ՍՍՌ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ կազմել է (համեմատելի գներով) 1945 թվի հաշվետվության համեմատությամբ 140 տոկոս, որից միութենական ենթակայության ձեռնարկությունների գծով՝ 128 տոկոս և միութենական-ռեսպուբլիկական ու տեղական ենթակայության ձեռնարկությունների և գերատեսչությունների գծով՝ 164 տոկոս։

1946 թվին 1945 թվի համեմատությամբ առանձին մինիստրությունների ձեռնարկությունների ու կառուցումների գծով կապիտալ աշխատանքների ծավալի կատարումը բնութագրվում է հետևյալ տվյալներով. սև մետալուրգիայի գծով՝ 190 տոկոս (Թումանյանի հրակայուն աղյուսի գործարան), գու-

նավոր մետալուրգիայի գծով՝ 116 տոկոս, էլեկտրակայանների գծով՝ 235 տոկոս, քիմիական արդյունաբերության գծով՝ 139 տոկոս, էլեկտրոարդյունաբերության գծով՝ 127 տոկոս, ռետինի արդյունաբերության գծով՝ 163 տոկոս, տեքստիլ արդյունաբերության գծով՝ 118 տոկոս, տեղական արդյունաբերության գծով՝ 291 տոկոս, ջրային տնտեսության գծով՝ 106 տոկոս։

1946 թվին կառուցվել և գործարկվել է պետական 15 ձեռնարկություն։ Շահագործման են հանձնվել լրիվին կամ մասնակիորեն հետևյալ նորակառույցները. կաբելի գործարանը, կորդի և մահուդի գործարանները, լայն սպառման մետաղե առարկաների և ակրիլատային իրերի գործարանները, սոսնձի գործարանն ու աղացարանը և այլն։ Ռեսպուբլիկայի տեքստիլ ձեռնարկություններում գործարկվել է մանածագործական 896 իլիկ։ Քիմիական գործարանի վերակառուցման և ընդլայնման հետևանքով պղնձի արջասպի գծով նրա կարողությունը ավելացել է 2 անգամ և սուպերֆոսֆատի արդյունաբերության գծով՝ 4 անգամ։

Բնակարանային շինարարության ասպարեզում կատարված կապիտալ աշխատանք-



ների ծավալը 1946 թվին 1945 թվի համեմատությամբ ամբողջությամբ վերցրած կազմել է 336 տոկոս, որից միութենական ենթակայության գծով՝ 250 տոկոս, միութենական-ռեսպուբլիկական և տեղական ենթակայության գծով՝ 465 տոկոս։ Տեղական սովետների բնակարանային շինարարության ծավալը 1946 թվին 1945 թվի համեմատությամբ աճել է 8,6 անգամ։

Պետական կազմակերպությունների և ձեռնարկությունների կողմից ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած 1946 թվին շահագործման հանձնված բնակելի տարածությունը 1945 թվի համեմատությամբ կազմում է 124 տոկոս, որից միութենական-ռեսպուբլիկական և տեղական ենթակայության ձեռնարկությունների ու կազմակերպությունների գծով՝ 178 տոկոս։ Տեղական սովետների կողմից 1946 թվին շահագործման հանձնված բնակելի տարածությունը 1945 թվի համեմատությամբ աճել է 8,7 անգամ։

1946 թվին ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվել է Սովետական Հայաստան ներգաղթած արտասահմանյան հայերի համար կատարվող բնակարանային շինարարությունը։

## V

Մանրածախ ապրանքաշրջանառությունը 1946 թվին 1945 թվի համեմատությամբ կազմել է 153 տոկոս։ Առևտրական ցանցի շրջանառությունը 1946 թվին 1945 թվի համեմատությամբ առանձին կազմակերպությունների գծով բնութագրվում է հետևյալ ցուցանիշներով. Առևտրի մինիստրության ցանցի գծով՝ 195 տոկոս, Արհեստագործական կոոպերացիայի գծով՝ 201 տոկոս, Հաշմանդամների կոոպերացիայի գծով՝ 101 տոկոս և Հայկոոպի գծով՝ 124 տոկոս։

Միջոցառումներ են կիրառվում ավելացնելու համար տեղական արդյունաբերության և կոոպերատիվ կազմակերպությունների կողմից արդյունաբերական ու պարենային ապրանքների արտադրությունը, որի կապակցությամբ քաղաքներում ծավալվում է լայն սպառման առարկաների և պարենամթերքի կոոպերատիվ առևտուրը։

Առևտրական ցանցը մինչև 1947 թվի հունվարի 1-ը 1946 թվի հունվարի 1-ի համեմատությամբ կազմում է. Առևտրի մինիստրության գծով՝ 122 տոկոս, Արհեստագործական կոոպերացիայի գծով՝ 170 տո-



կոս, Հաշմանդամների կոոպերացիայի գծով՝ 126 տոկոս և Հայկոոպի գծով՝ 104 տոկոս։

## VI

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը 1946 թվի ընթացքում ավելացել է 15,6 հազարով։

Արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանները և ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցները 1946 թվին ավարտել է 1332 երիտասարդ որակյալ բանվոր։ Բացի դրանից, անհատական և բրիգադային ուսուցման միջոցով ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկությունների կողմից 1946 թվի 9 ամսվա ընթացքում պատրաստված և որակավորումը բարձրացված բանվորների թիվը կազմում է 1888 մարդ։

1946 թվին արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանները և ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցները ընդունվել է 2980 մարդ։ Բացվել է ֆաբրիկա-գործարանային ուսուցման 4 նոր դպրոց՝ 975 աշակերտով։

Տարրական և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը 1945 թվի համեմատու-

*թյամբ աճել է 22,8 հազարով, տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը աճել է 318-ով և բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 743-ով։*

*Մինչև 1946 թվի վերջը 1945 թվի համեմատությամբ ռեսպուբլիկայում գիտա-հետազոտական հիմնարկությունների թիվը կազմել է 104 տոկոս, իսկ նրանց գիտական աշխատողների թիվը՝ 109 տոկոս։*

*1946 թվին ընդլայնվել է բուժհիմնարկությունների, սանատորիաների ու հանգստյան տների ցանցը և ավելացել է բժիշկների ու միջին բժշկական անձնակազմի թիվը։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Պետպլանի Հայկական ՍՍՌ լիազոր՝

*Մ. ՄԻՐԶՈՅԱՆ*

---

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 29-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ի պաշտպանություն սոցիալիստական Հայրենիքի։ *Քաղհրատ, 1940 թ.*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին։ *Քաղհրատ, 1941 թ.*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.*

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, 1946 թ.*

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց, *7—8 գլուխները։ Հայպետհրատ, 1944 թ.*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 28-րդ տարեդարձը։ *Հայպետհրատ, 1945 թ.*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Լենինը, Ստալինը և Կարմիր Բանակը։ *Հայկուսհրատ, 1935 թ.*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Ստալինը և Կարմիր Բանակը։ *Քաղհրատ, 1941 թ.*

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 29-րդ տարեդարձը։ *Հայպետհրատ, 1946 թ.*

Գ. Ֆ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ.— Մեզ նովանի է Լենինի-Ստալինի մեծ դրոշը։ *Զեկուցում 1947 թ. հունվարի 21-ին, Վ. Ի. Լենինի մահվան 23-րդ տարեդարձին նվիրված սգո հանդիսավոր նիստում։ «Սովետական Հայաստան», 22 հունվարի, 1947 թ., կամ «Ագիտատորի Բլոկնոտ» № 3, 1947 թ.։*

—О—

Պատասխանատու խմբագիր՝
*Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*ՎՖ 00680, պատվեր՝ 220, տիրաժ՝ 9200*

*Ստորագրված է տպագրության 13/II 1947 թ.*

*ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*